ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ






№ 9 ՄԱՅԻՍ 1956

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։





# ԱՎԵԼԻ ՇԱՏ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐ ՄԵՐ ԵՐԿՐԻՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարը ելնելով սովետական ժողովրդի նյութական դրության բարելավման հարաճուն պահանջմունքներից, մարտական խնդիր դրեց՝ 6-րդ հնգամյակում արդյունաբերության հետ միասին խոշոր չափով զարգացնել նաև գյուղատնտեսությունը, ավելացնել գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Պարտիայի և կառավարության ձեռնարկած միջոցառումները՝ գյուղատնտեսության զարգացման, երկրում մթերքների առատություն ստեղծելու վերաբերյալ ամենաջերմ արձագանք են գտել կոլտնտեսային աշխատավորության և ամբողջ ժողովրդի կողմից։ Պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը անում է ամեն բան, որպեսզի մինչև վերջ և անշեղորեն կենսագործվեն գյուղատնտեսության զարգացման նոր, շեշտակի վերելք առաջ բերելու մասին պարտիայի ու կառավարության որոշումները։





Ամփոփելով հինգերորդ հնգամյակի արդյունքները, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Ժողովրդական Տնտեսության Հեռանկարային Պլանավորման Պետական Հանձնաժողովը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական Վիճակագրական Վարչությունը վերջերս հրապարակված հաղորդագրության մեջ նշում են այն խոշոր հաջողությունները, որոնք ձեռք են բերվել գյուղատնտեսության ասպարեզում:

Համաձայն այդ հաղորդագրության, հինգերորդ հնգամյակում գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունները երկրում ավելացել են 39,5 միլիոն հեկտարով: Հացահատիկի մեկ հեկտարի միջին բերքատվությունը՝ նախորդ հնգամյակի համեմատությամբ ավելացել է 18 տոկոսով: Խամ և խոպան հողերի շրջանում յուրացվել է 30 միլիոն հեկտար հող, իսկ ամբողջ երկրում 33 միլիոն հեկտար: 1955 թվականին կոլտնտեսություններն ու սովխոզները խամ և խոպան հողերում ցանել են 20,5 միլիոն հեկտար հացահատիկային կուլտուրաներ:

Զգալիորեն աճել է տեխնիկական կուլտուրաների համախառն բերքը. բամբակի հումքինը՝ 9 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 47 տոկոսով, արևածաղկինը՝ ավելի քան 2 անգամ: Հնգամյակի ընթացքում կարտոֆիլի ցանքատարածությունը ավելացել է 7 տոկոսով, բանջարեղենինը՝ 15 տոկոսով: Անասնաբուծական մթերքների արտադրությունը ավելացել է. մսինը՝ 30 տոկոսով, կաթինը՝ 19 տոկոսով, ձվինը՝ 54 տոկոսով, մեկ կովի միջին կաթնատվությունը՝ 23 տոկոսով: Տվյալները ցույց են տալիս, որ Սովետական Միությունում զգալի չափով ավելացել է խոշոր և մանր եղջերավոր անասունների գլխաքանակը, այսպես, օրինակ. խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը 1955 թվականին կազմել է 67,1 միլիոն գլուխ, որը 1950 թվականի համեմատությամբ աճել է 17 տոկոսով: Անասունների ընդհանուր հոտի մեջ կովերի գլխաքանակը կազմել է 29,2 միլիոն, որը 1950 թվականի համեմատությամբ աճել է 20 տոկոսով: Նույնպիսի համեմատությամբ ոչխարների գլխաքանակը աճել է 51 տոկոսով, խոզերինը՝ 2,1 անգամ:



1955 թվականին հացահատիկի պետական մթերումներն ու գնումները 1950 թվականի համեմատությամբ ավելացել են 14 տոկոսով, բամբակի հումքինը՝ 9 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 54 տոկոսով, բանջարեղենինը՝ 90 տոկոսով, անասուններինը՝ 74 տոկոսով, կաթինը՝ 59 տոկոսով, ձվինը՝ 51 տոկոսով:

Կոլտնտեսություններն ու կոլտնտեսականները պետությանը հանձնած ու վաճառած իրենց գյուղատնտեսական մթերքների դիմաց 1955 թվականին ստացել են 31 միլիարդ ռուբլի ավելի, քան 1950 թվականին և 29 միլիարդ ռուբլի ավելի, քան 1952 թվականին։

Գյուղատնտեսությունը բարձրացնելու, երկրում մթերքների առատություն ստեղծելու գործում խոշոր նշանակություն ունի դաշտավարությունը և անասնապահական օբյեկտները մեխանիզացիայի և էլեկտրիֆիկացիայի ենթարկելը։ Պարտիան ամենայն հոգատարությամբ և հետևողականությամբ տարեցտարի ուժեղացնում է ՄՏՍ կայանների պարկերը, անընդհատ կատարելագործվում է գյուղատնտեսական տեխնիկան։ Հնգամյակի ընթացքում գյուղատնտեսությանը մատակարարվել է 824 հազար տրակտոր, 410 հազար բեռնատար ավտոմեքենա, 217 հազար հացահատիկային կոմբայն, 98 հազար կոմբայնային խրձհավաքիչ, 16 հազար ճակնդեղահավաք կոմբայն, եգիպտացորենի բերքահավաքի 7 հազար կոմբայն, 9 հազար սիլոսահավաք կոմբայն, 488 հազար տրակտորային գութան, 573 հազար տրակտորային շարքացան, 496 հազար տրակտորային



կուլտիվատոր, 292 հազար տրակտորային հնձիչ և բազմաթիվ գյուղատնտեսական այլ մեքենաներ և սարքավորումներ։ 1955 թվականին կոլտնտեսություններում կատարվել են 2 անգամ ավելի գյուղատնտեսական աշխատանքներ, քան 1950 թվականին։ Գրեթե լրիվին մեքենայացվել են ցելի և ցրտահերկի, հացահատիկային կուլտուրաների, բամբակենու ու շաքարի ճակնդեղի ցանքի աշխատանքները։

Պարտիայի ու կառավարության հոգատարության շնորհիվ վերջին շրջանում կոլտնտեսություններն ու ՄՏՍ կայանները ամրապնդվեցին բանիմաց կադրերով։ Քաղաքներից ու արդյունաբերական կենտրոններից կոլտնտեսությունները աշխատանքի են ուղարկվել ավելի քան 120 հազար մասնագետ։ 20 հազար կոմունիստներ ուղարկվել են որպես կոլտնտեսությունների նախագահներ։ Արդեն 1955 թվականին գյուղատնտեսության մեջ աշխատում էին 400 հազարից ավելի մասնագետներ։ Այժմ պարտիան խնդիր է դնում, որ մոտ ապագայում դաշտավարական և տրակտորային բրիգադաների գլուխ կանգնեն գյուղատնտեսներ ու մեխանիկներ, իսկ անասնապահական ֆերմաների գլուխ՝ զոոտեխնիկներ։

ժողովրդի նյութական բարեկեցության բարելավման, հատկապես գյուղատնտեսական մթերքների արտադրության գծով, խոշոր տեղ է նախատեսվում 6-րդ հնգամյակում։ XX համագումարի կողմից ընդունված՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման վերաբերյալ 6-րդ հնգամյա պլանի Դիրեկտիվներում նախատեսված է զգալիորեն բարձրացնել հացահատիկի, տեխնիկական կուլտուրաների, բանջարեղենի և անասնաբուծական մթերքների՝ կաթի, մսի ու յուղի արտադրությունը։ 1960 թվականին երկրում հացահատիկի համախառն բերքը պետք է հասցվի 11 միլիարդ փթի, որը ոչ միայն հնարավորություն կտա լրիվ ապահովել բնակչության պահանջմունքները հացի նկատմամբ, այլև բավականին քանակությամբ հատիկ կառանձնացվի անասունները կերակրելու համար։ Նույն թվականին կաթի արտադրությունը 1955 թվականի համեմատությամբ ավելացվելու է մոտ 2 անգամ, գլխավորապես կովերի կաթնատվության բարձրացման միջոցով, միսը՝ 2 անգամ, ձուն՝ 254 տոկոսով, բանջարեղենը՝ 218 տոկոսով, կարտոֆիլը՝ 185 տոկոսով։

1960 թվականին միայն սովխոզները երկրին տալու են 915 միլիոն փութ հացահատիկ,



1,5 միլիոն տոննա միս, 6,8 միլիոն տոննա կաթ, մոտ 80 հազար տոննա բուրդ։

Կենսագործելով պարտիայի և կառավարության որոշումները, մեր երկրի կոլտնտեսային աշխատավորությունը զգալի հաջողությունների է հասել կաթնատվության բարձրացման ուղղությամբ։ Անցյալ տարի յուրաքանչյուր ֆուրաժային կովի կաթնատվությունը ավելացել է 800—900 կիլոգրամով։ Լուրջ աշխատանք է կատարվել անասունների ցեղայնությունը բարելավելու և կերի բազան ուժեղացնելու գործում։

Քաղաքային բնակչության աճող պահանջմունքները կաթնամթերքների և բանջարեղենի նկատմամբ ապահովելու նպատակով ընդլայնվելու են խոշոր քաղաքների և արդյունաբերական կենտրոնների շուրջը գտնվող կաթնաբանջարեղենի գոտիները և ստեղծվելու են նորերը։

Քաղաքամերձ գոտիներում կազմակերպվելու են նոր սովխոզներ, իսկ եղած սովխոզները անհրաժեշտության դեպքում մասնագիտացվելու են կաթի, կարտոֆիլի և բանջարեղենի արտադրության համար։ Ձմեռային պայմաններում քաղաքային բնակչությանը թարմ բանջարեղենով ապահովելու նպատակով հարց է դրվում ընդարձակել ջերմոցների

և ջերմատների կառուցումը։ Քաղաքամերձ գոտիների կոլտնտեսություններում և սովխոզներում ավելացվելու է կարտոֆիլի և բանջարեղենի վաղահաս տեսակների արտադրությունը։

Պարտիայի XX համագումարի Դիրեկտիվները կարևոր խնդիր են համարում այգեգործության զարգացումը։ Հինգերորդ հնգամյակի համեմատությամբ, վեցերորդ հնգամյակում պտուղների, հատապտուղների և խաղողի արտադրությունը ավելացվելու է առնվազն մեկ ու կեսից մինչև երկու անգամ։ Ընդարձակվելու է խաղողի և պտղատու ծառերի տնկարանների ցանցը և բարելավվելու են նրանց տեսակները։ Խնդիր է դրվում զարգացնելու բանվորների ու ծառայողների կոլեկտիվ այգեգործությունը և կոլտնտեսականների այգեգործությունը՝ նրանց տնամերձ հողամասերում։

Գյուղատնտեսության առջև դրված այս հոյակապ խնդիրները կատարելու համար, պարտիան լուրջ միջոցառումներ է ձեռնարկում մեքենայացման ենթարկել գյուղատընտեսության բոլոր աշխատատար պրոցեսները, այն հագեցնել նոր, ժամանակակից, բարձր արտադրողականությամբ տեխնիկայով։ Նախատեսվում է 6-րդ հնգամյակում



գյուղատնտեսությանը տալ 1 միլիոն 650 հա-
զար տրակտոր, այդ թվում 680 հազար միջ-
շարային մշակության տրակտոր, 560 հազար
հացահատիկային կոմբայն, 250 հազար ե-
գիպտացորեն և սիլոս հավաքող կոմբայն և
բազմաթիվ այլ գյուղատնտեսական մեքե-
նաներ։ Գյուղատնտեսական կուլտուրաների,
այգեգործության, կարտոֆիլի և բանջարե-
ղենի արտադրությունը ավելացնելու նպա-
տակով մեծ զարկ է տրվելու հանքային պա-
րարտանյութերի արտադրության ավելացմա-
նը։ Այսպես, օրինակ, 1950 թվականին սո-
ցիալիստական արդյունաբերությունը գյու-
ղին տալու է 20 միլիոն տոննա պարարտա-
նյութ, որը 6,5 անգամ կգերազանցի 1940
թվականի արտադրությանը և ավելի քան 2
անգամ՝ 1955 թվականի արտադրությանը։

Պարտիան գյուղատնտեսության գիտության առջև խնդիր է դնում՝ լրջորեն զբաղվել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման և անասնաբուծության մթերատվության ավելացման հարցերով։ Առաջավոր փորձերի հիման վրա, գիտությունը պետք է հատուկ եղանակներ մշակի գյուղատնտեսությունը ճիշտ վարելու, կոլխոզներում ըստ նրանց հողա-կլիմայա-

կան պայմանների ցանքաշրջանառությունը հաջող կազմակերպելու համար։

6-րդ հնգամյակում, գյուղատնտեսության զարգացման, գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման ուղղությամբ խոշոր աշխատանքներ են կատարվելու նաև մեր ռեսպուբլիկայում։ Հայաստանում 1960 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, հացահատիկի արտադրությունը ավելացվելու է մոտ 1,5 անգամ, միսը՝ 2,1 անգամ, կաթինը՝ 2,2 անգամ։ Լուրջ ուշադրություն է դարձվելու այգեգործության և խաղողագործության զարգացմանը։ Ընդարձակվելու է ոռոգման ցանցը և ջրովի են դարձվելու տասնյակ հազարավոր հեկտար նոր տարածություններ։

Երկրում գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու նպատակին է ուղղված ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի վերջերս հրապարակված դիմումը՝ ուղղված բոլոր կոլտնտեսականներին ու կոլտնտեսուհիներին, սովխոզների բանվորներին ու բանվորուհիներին, ՄՏ կայանների, գիտահետազոտական ինստիտուտների, փորձակայանների աշխատողներին, գյուղատնտեսներին ու զոոտեխնիկներին, գյուղատնտեսության բոլոր աշխատողներին ու



մասնագետներին։ Պարտիայի Կենտկոմը և Մինիստրների Սովետը կոչ են անում գյուղատնտեսության ֆրոնտի բոլոր աշխատողներին՝ լիովին օգտագործել եղած բոլոր հնարավորություններն ու միջոցները, փորձարար աշխատանք ծավալել երկրում գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու, այդ մթերքների նկատմամբ բնակչության աճող պահանջմունքները բավարարելու համար։

Դիմումի մեջ շատ օրինակներ են բերված 1955 թվականին գյուղատնտեսության ֆրոնտում ձեռք բերված հաջողությունների մասին՝ հացահատիկի, կաթի, մսի և բանջարանոցային կուլտուրաների արտադրության ավելացման մասին։

Ոգեշնչված պարտիայի XX համագումարի որոշումներով, գյուղատնտեսության ֆրոնտի աշխատողները պատվով կկատարեն իրենց վրա դրված պարտականությունները և երկրին կտան ավելի շատ ու բարձրորակ գյուղատնտեսական մթերքներ։

# ՄԻ ԱԳԻՏԿՈԼԵԿՏԻՎԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԱՍԻՆ

Հ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

Աշխատավորների լայն շրջանում կատար-
վող ագիտացիոն-բացատրական աշխատան-
քը ավելի հետաքրքիր և ավելի բովանդա-
կալից դարձնելու նպատակով, պարտկազ-
մակերպության ղեկավարությամբ, ուսանելի
աշխատանք է կատարում Երևանի Հայէլեկ-
տրո գործարանի ագիտկոլեկտիվը: Ագիտ-
կոլեկտիվը, որը բաղկացած է 140 հոգուց,
նախ պարբերաբար սեմինար պարապմունք-
ներ է ունենում և փորձի փոխանակման
կարգով քննարկում առանձին զրույցներ,
ապա ագիտատորներին մեթոդական օգնու-
թյուն է ցույց տալիս, թե ինչպես անել, որ
ընտրողների համար կազմակերպվող ագի-
տացիոն զրույցները լինեն հետաքրքիր և
նպատակասլաց: Այսպես, օրինակ, վերջերս
տեղի ունեցած սեմինար պարապմունքներից
մեկում ագիտատորները լսեցին գործարանի
պլանային բաժնի վարիչ Ի. Եփրեմյանի զե-
կուցումը՝ «Ինչպես կազմակերպել զրույց ար-



տադրանքի ինքնարժեքի իջեցման մասին»:
Ընկ. Եփրեմյանը գործարանի կյանքից վերց-
րած կոնկրետ փաստերով հանգամանորեն
պարզաբանեց այն լայն հնարավորություն-
ները, որ կան գործարանում արտադրանքի
ինքնարժեքն իջեցնելու համար:

Օգտագործելով առաջավորների աշխա-
տանքի փորձը, նա ցույց տվեց, թե
ինչպես հումքը, օժանդակ նյութերը,
էլեկտրաէներգիան խնայողաբար օգտա-
գործելու, բանվորական տեղը լավ նա-
խապատրաստելու, սարքավորումները լրիվ
կարողությամբ և անխափան աշխատեցնելու
միջոցով արտադրանքի ինքնարժեքի իջեցման
գործում սոցմրցության առաջավորները հա-
սել են նշանակալից հաջողությունների:
Միայն արտադրանքի ինքնարժեքի 1 տոկոս
իջեցումը, ասաց նա,— մեր գործարանին
տարեկան կտա միլիոնավոր ռուբլու տնտե-
սում: Այստեղից էլ հասկանալի է, թե ինչ-
պիսի խոշոր նշանակություն ունի արտա-
դրանքի ինքնարժեքի իջեցումը սոցիալիստա-
կան արդյունաբերության պայմաններում:

Շնորհիվ այն բանի,—շարունակում է նա,
— որ այս տարվա հունվար ամսին գործա-
րանի №№ 14, 17 և 18 ցեխերում կատարվեց
հումքի և նյութեղենի ավելի քան 110 հազար

ռուբլու խնայողություն, փորձարանում մարտ և ապրիլ ամիսներին նախատեսված 8,6 տոկոսի փոխարեն արտադրանքի ինքնարժեքն իջավ մոտ 10 տոկոսով։

Այդ սեմինար պարապմունքում, զեկուցումից հետո, ագիտատորները բազմաթիվ հարցեր տվեցին արտադրանքի ինքնարժեքի իջեցման վերաբերյալ։ Ստանալով տրված հարցերի պատասխանները, ագիտատորները սեմինար պարապմունքում բազմաթիվ փաստեր հավաքեցին արտադրանքի ինքնարժեքի իջեցման միջոցների, փորձարանի ցեխերում արտադրական կարողությունները լրիվ և արդյունավետ օգտագործելու վերաբերյալ։

Գործարանի ագիտատորներն իրենց սեմինար պարապմունքներից մեկում լսել են նաև գործարանի դիրեկտոր Վ. Մինասյանի «Վարպետը արտադրության կենտրոնական դեմքն է» թեմայով զեկուցումը։ Զեկուցողը ագիտատորներին մանրամասնորեն պարզաբանել է վարպետի իրավունքները և պարտականությունները, որ արտադրության մեջ վարպետն ունի վճռական դեր և որ նրանից է կախված տվյալ տեղամասի արտադրական հաջողությունները։ Ընկ. Մինասյանը մասսայաբար խրախուսեց № 12 ցեխի վարպետ Կ. Ասա-



տրյանին, № 4 ցեխի ավագ վարպետ Կ. Մաղաքյանին և շատ ուրիշների, որոնք պայքար են ծավալել պետական առաջադրանքները ժամանակին կատարելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, թողարկվող արտադրանքի որակը բարելավելու և ինքնարժեքն իջեցնելու համար։ Սեմինար պարապմունքի վերջում ագիտատորները զեկուցողին հարցեր տվեցին մեքենայական պարկի և արտադրական տարածության ռացիոնալ օգտագործման, բանվորական ուժի ճիշտ դասավորման, օրվա գրաֆիկի կատարման, աշխատանքային ու արտադրական կարգապահության բարձրացման մասին։

Սեմինար պարապմունքներից բացի, ագիտատորներին որակյալ օգնություն ցույց տալու լավագույն միջոց է նաև ագիտատորների մշտական հրահանգավորումը։ Չսպասելով հերթական սեմինար պարապմունքի, որը տեղի է ունենում ամսական մեկ անգամ, պարտկազմակերպության բյուրոյի հանձնարարությամբ, ագիտկոլեկտիվը սիստեմատիկաբար նիստեր է գումարում, ուր ագիտատորներին տրվում է համապատասխան հրահանգավորում՝ պարտիայի և կառավարության որոշումները մասսայականացնելու

վերաբերյալ։ Օրինակ, երբ մամուլում հրապարակվեց ՍՄԿՊ XX համագումարի նյութերը, պարտկազմակերպության կոմիտեն անմիջապես հրավիրեց ագիտատորների խորհրդակցություն։ Այդ խորհրդակցությունում ագիտատորներին մանրամասն հրահանգավորում տրվեց ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցումը մասսայականացնելու մասին։ Այնուհետև ագիտատորները տեղեկություններ ստացան այն մասին, թե ցեխերը և հերթափոխությունները ինչպես են կատարում ստանձնած պարտավորությունները և ինչ խնդիրներ ունեն կատարելու առաջիկայում։ Այդ վերջին տվյալները ագիտատորներն ստացան նրա համար, որպեսզի ունկնդիրներին պարզաբանեին իրենց առջև դրված խնդիրները տվյալ շաբաթվա կամ ամսվա ընթացքում։

Ագիտկոլեկտիվը պարտիական կոմիտեի ղեկավարությամբ լուրջ աշխատանք է կատարում նաև ցուցադրական ագիտացիա կազմակերպելու ուղղությամբ։ Ագիտատորների ակտիվ մասնակցությամբ գործարանի ցեխերում, աչքի ընկնող տեղերում փակցված են գեղարվեստորեն ձևավորված բազմաթիվ լոզունգներ, կոչեր ու պլակատներ։ Այսպես, օրինակ՝ «Հումքի, էլեկտրաէներգիայի խնա-





յողությամբ և որակական բարձր ցուցանիշներով փակենք վեցերորդ հնգամյակի առաջին տարին», «Ռացիոնալ օգտագործիր աշխատանքային օրը», «Աշխատանքի արտադրողականության բարձրացումը մեր առաջնահերթ խնդիրն է», «Պայքարիր հումքի, էլեկտրաէներգիայի, վառելանյութի և օժանդակ նյութերի խնայողության համար» և այլն։

Բացի դրանից գործարանի գրադարանում կազմակերպված է ագիտատորին օգնելու անկյուն, որտեղ սիստեմատիկ կերպով հավաքվում են անհրաժեշտ նյութեր, ինչպես, օրինակ, թարմ թերթեր, ամսագրեր, քարտեզներ, դիագրամաներ, գործարանի արտադրական պլանների կատարման, հիմնական և օժանդակ նյութերի խնայողության, արտադրանքի որակի բարձրացման վերաբերյալ հարուստ տվյալներ ու փաստեր։ Այս ամենից ագիտատորները ցանկացած ժամանակ կարող են օգտվել և դրանք օգտագործել իրենց զրույցների ժամանակ։

Պարտկազմակերպության կոմիտեի կողմից պարտիայի XX համագումարի որոշումները բանվոր-ծառայողների գիտակցությանը հասցնելու, քաղաքական-մասսայական աշխատանքը լավագույնս կազմակեր-

պելու շնորհիվ, գործարանի կոլեկտիվը հասել է նշանակալից հաջողությունների։ Գերակատարված է նոր հնգամյակի առաջին տարվա եռամսյա պլանը։

Պարտիայի XX համագումարի որոշումները քաղաքական և աշխատանքային հուժկու վերելք են առաջ բերել, ինչպես մեր ամբողջ երկրում, այնպես էլ Հայէլեկտրո գործարանում։ Ագիտատորների խնդիրն է պարտկազմակերպության ղեկավարությամբ թե՛ գործարանում և թե՛ ըստ բնակավայրի, աշխատավորների մեջ մանրամասնորեն պարզաբանել պարտիայի XX համագումարի որոշումները, ագիտացիան սերտորեն կապել գործարանի առջև դրված կոնկրետ խնդիրների հետ, մոբիլիզացնել նրանց ուժերը նոր հնգամյակի հոյակապ խնդիրները հաջողությամբ կատարելու համար։

---

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ՋՐՈՒՑՑԻ ԺԱՄԱՆԱԿ

---

# ԱՃՈՒՄ ԵՎ ԲԱՐԳԱՎԱՃՈՒՄ ԵՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

*Տնտեսության սոցիալիստական սիստեմի շնորհիվ տարեցտարի աճում և բարգավաճում են Սովետական Միության եղբայրական ռեսպուբլիկաները։ Ամեն տարի նրանք փայլուն հաջողություններ են ձեռք բերում արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի զարգացման բնագավառում։ Ահա այդ են հաստատում հետևյալ թվերն ու փաստերը.*

✪ Հինգերորդ հնգամյակի տարիներին Ռուսաստանի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայում արդյունաբերական արտադրանքի ծավալն ավելացել է 1,8 անգամ, չուգունի ձուլումը՝ 1,6 անգամ, նավթի հանույթը՝ 2,7 անգամ, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 1,8 անգամ, մեքենաշինական արտադրանքի թողարկումը՝ 2,4 անգամ։

✪ Վերջին երկու տարում հացահատիկի համախառն բերքը Ռուսաստանում ավելացել է 26 տոկոսով, երկարաթել վուշինը՝ 34 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝

66 տոկոսով, մսի արտադրությունը՝ 30 տոկոսով և բրդինը՝ 54 տոկոսով։

✪ 1955 թվականին խամ և խոպան հողերը յուրացնելու հաշվին Ռուսաստանի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում ցանքային տարածությունները, 1940 թվականի համեմատությամբ, ավելացել է 20,5 միլիոն հեկտարով։

✪ ՌՍՖՍՌ-ի կոլտնտեսություններում և սովխոզներում անցյալ տարի մեծ չափերով ավելացավ նաև մսի արտադրությունը։ 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, կոլտնտեսությունները պետությանը 2,3 անգամ ավելի շատ միս հանձնեցին։

✪ Տարեցտարի ծաղկում և բարգավաճում է մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվան։ 1950 թվականին Մոսկվայում կառուցվեց և շահագործման հանձնվեց 536 հազար ք. մ. բնակելի տարածություն, 1955 թվականին՝ 1 միլիոն 65 հազար ք. մ. բնակելի տարածություն, իսկ այս տարի կառուցվելու է 1 միլիոն 360 հազար ք.մ. բնակելի տարածություն։

✪ Միայն նոր հնգամյակում Մոսկվայի վերակառուցման համար ծախսվելու է 25 միլիարդ ռուբլի։

✪ Մոսկվա քաղաքի և Մոսկվայի մարզի ձեռնարկությունները ժամկետից շուտ կատարելով հինգերորդ հնգամյա պլանը, պլանից դուրս երկրին տվեցին 28 միլիարդ ռուբլու արտադրանք։ 1950 թվականի համեմատությամբ, 1955 թվականին աշխատանքի արտադրողականությունը Մոսկվայի մարզում բարձրացավ 49 տոկոսով։ Անցյալ տարի արտապլանային արտա-



դրանք թողարկելու շնորհիվ ձեռնարկությունների խնայողությունը կազմեց 1 միլիարդ 400 միլիոն ռուբլի։

✪ Ընթացիկ տարում Մոսկվայի մեքենաշինական ձեռնարկությունները բաց կթողնեն 426 նոր տիպի հաստոցներ։

✪ Կույբիշևի մարզում արդյունաբերության արտադրության ծավալը 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, աճել է 2,3 անգամ, նավթի հանույթը ավելացել է ավելի քան 2 անգամ, իսկ վերամշակումը՝ 5 անգամ, ջերմակայանների կարողությունը ավելացել է 2,8 անգամ, գնդակավոր առանցքակալների արտադրությունը՝ 3 անգամ։

✪ Վիթխարի թափով առաջ է գնում Կույբիշևգէսի շինարարությունը։ 1955 թվականին հիդրոշինարարները տվեցին առաջին արդյունաբերական էլեկտրաէներգիան, անցյալ տարվա դեկտեմբերի 29-ին գործարկվեց առաջին հիդրոգեներատորը 105 հազար կիլովատ կարողությամբ, իսկ այս տարվա հունվարին՝ նույն կարողությամբ 2-րդ հիդրոտուրբինը։

✪ Նոր հնգամյակում Ռուսաստանի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայում արդյունաբերության համախառն արտադրանքն ավելանալու է մոտավորապես 1,7 անգամ, չուգունի ձուլումը՝ 1,6 անգամ, գլանվածքի արտադրությունը՝ 1,5 անգամ, երկաթի հանույթը՝ 1,4 անգամ, ալյումինի արտադրությունը՝ 2,4 անգամ, ածխի հանույթը՝ 1,5 անգամ, նավթինը՝ 2,2 անգամ, գա-

չինը՝ 5,5 անգամ, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 1,9 անգամ և այլն։

✪ Նոր հնգամյակում Ռուսաստանի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայում կառուցվելու է ոռոգման ցանց 258 հազար հեկտար տարածության վրա, 365 հազար հեկտար տարածության վրա չորացվելու են ճահիճներն ու ճահճացած հողերը։ Այդ նույն ժամանակաշրջանում մեծ չափով ավելանալու է հացահատիկի և անասնաբուծական մթերքների արտադրությունը։

✪ Ունենալով արդյունաբերական հումքի և էներգետիկ խոշոր ռեսուրսներ, Ուկրաինան մեծ տեղ է գրավում Սովետական Միության էկոնոմիկայի մեջ։ Այժմ Ուկրաինան տալիս է ածխի միութենական հանույթի 32 տոկոսը, չուգունի համարյա կեսը, պողպատի և գլանվածքի 37 տոկոսը, երկաթի հանքաքարի համարյա 60 տոկոսը, մեքենաների արտադրության ավելի քան քառորդը։

✪ 1913 թվականի համեմատությամբ այժմ Դոնբասում հինգ անգամ ավելի շատ ածուխ է արդյունահանվում։ Նույն ժամանակամիջոցում չուգունի արտադրությունը ավելացել է համարյա վեց անգամ, իսկ պողպատինն ու գլանվածքինը՝ ավելի քան վեց անգամ։ Նախառևոլյուցիոն մակարդակի համեմատությամբ 96 անգամ աճել է մեքենաշինական և մետաղամշակման արդյունաբերությունը։

✪ Հինգերորդ հնգամյա պլանը կատարված է 4 տարում։ Անցած հնգամյակում Ուկրաինայում գոր-



ծարկվել է 142 ածխահոր, 87 դոմնային և մարտենյան հնոց, 18 գլանման և խողովակային հաստոց, 17 մեքենաշինական գործարան և մի շարք այլ ձեռնարկություններ։

✪ Ուկրաինայում ստեղծվել է խոշորագույն էներգետիկ բազա։ Այժմ Ուկրաինայում արտադրվում է 15 անգամ ավելի շատ էլեկտրաէներգիա, քան 1913 թվականին արտադրվել է ամբողջ ցարական Ռուսաստանում։

✪ Ուկրաինայի արդյունաբերության համախառն արտադրանքը 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ավելացել է 91 տոկոսով։ Անցած հնգամյակի ընթացքում կրկնապատկվել է պողպատի, պրոկատի և էլեկտրաէներգիայի արտադրությունը, ածխի հանույթն ավելացել է 62 տոկոսով, մեքենաշինության արտադրանքի թողարկումը՝ 2,6 անգամ։

✪ Ուկրաինայում բարձր զարգացման է հասել գյուղատնտեսությունը։ Մեծ չափերով ավելացել է կարևորագույն գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Անցյալ տարի յուրաքանչյուր հեկտարից ստացվել է 202 ցենտներ ճակնդեղ, որը հավասար է 156 փութ շաքարի։ Ռեսպուբլիկայում շաքարի ճակնդեղի ցանքատարածությունները կազմում են 1 միլիոն 92 հազար հեկտար։ Անցյալ տարի ռեսպուբլիկան պլանից դուրս երկրին ավեց ավելի քան 160 միլիոն փութ հաց, պետությանը հանձնվեց միայն 396 միլիոն փութ ցորեն։

✪ Միայն վերջին հինգ տարիների ընթացքում Ուկրաինայում ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի համար պատրաստվել են ավելի քան 200 հազար մասնագետներ։ Այժմ հանրակրթական դպրոցներում, միջնակարգ և մասնագիտական ուսումնական հաստատություններում և բուհերում սովորում են 7 միլիոն մարդ։

✪ Նոր հնգամյակում հզոր թափով կզարգանա Ուկրաինայի ժողովրդական տնտեսությունը։ Ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքն ավելանալու է 1,7 անգամ, այդ թվում ռեսպուբլիկական արդյունաբերությունը՝ 1,6 անգամ, ածխի հանույթը ավելանալու է 1,6 անգամ, չուգունի ձուլումը, գլանվածքի արտադրությունը և երկաթի հանքաքարի հանույթը՝ 1,5 անգամ, նավթի հանույթը՝ 2,8 անգամ, բնական և ուղեկից գազինը՝ 2,6 անգամ, հանքային պարարտանյութերինը՝ 2 անգամ, տրակտորներինը՝ 2 անգամ, ցեմենտինը՝ 1,7 անգամ, կաշվե կոշկեղենինը՝ 1,6 անգամ, շաքարինը՝ 1,6 անգամ և այլն։

✪ Նոր հնգամյակում էլեկտրաէներգիայի արտադրությունն ավելանալու է 1,7 անգամ։ Ավարտվելու է Կախովկայի հիդրոհանգույցի շինարարությունը, կառուցվելու են Կրեմենչուգի, Դնեպրոձերժինսկու հիդրոէլեկտրակայանները ու խոշոր ջերմաէլեկտրակայաններ և սկսվելու է Դնեպրի վրա Կանևի հիդրոէլեկտրակայանի շինարարությունը։

✪ Ուկրաինայում նոր հնգամյակի ընթացքում կա-



ռուցվելու է ոռոգման ցանց 146 հազար հեկտար տարածության վրա, չորացման ցանց՝ 141 հազար հեկտար տարածության վրա։ Ջրովի կդարձվեն 1 միլիոն 240 հազար հեկտար տարածությամբ հողեր։

✪ Սովետական Միության ծաղկուն ռեսպուբլիկաներից է Ղազախստանը։ Ամեն տարի ժողովրդական տնտեսության զարգացման բնագավառում նոր հաջողությունների է հասնում Սովետական Ղազախստանը։ Անցյալ հնգամյակում ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքն ավելացել է 1,8 անգամ, քարածխի հանույթը՝ 62 տոկոսով, սև պղնձինը՝ 79 տոկոսով, արճճինը՝ 2,2 անգամ, ցինկինը՝ 2,5 անգամ և էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 2,2 անգամ։

✪ Վերջին 2 տարվա ընթացքում Ղազախստանում ժողովրդական տնտեսության մեջ կատարվել է 17,5 միլիարդ ռուբլի կապիտալ ներդրումներ։ Այդ գումարը մեկ ու կես անգամ ավել է այն կապիտալ ներդրումներից, որ կատարվել է ռեսպուբլիկայում անցյալ չորս հնգամյակների ընթացքում։ Նոր հնգամյակում ժողովրդական տնտեսության զարգացման համար հատկացվելու է մոտ 78 միլիարդ ռուբլի։

✪ Երկու տարվա ընթացքում ռեսպուբլիկայում յուրացվել է 18 միլիոն հեկտար խամ և խոպան հողեր, ցորենի ցանքային տարածությունը, 1953 թվականի համեմատությամբ, այժմ ավելացել է ավելի քան 4

անգամ։ Նախատեսվում է այս տարի հացահատիկի արտադրությունը հասցնել մեկ միլիարդ 400 հազար փթի։

✪ Նոր հնգամյակում է՛լ ավելի մեծ հաջողությունների է հասնելու Սովետական Ղազախստանը։ Արդյունաբերության համախառն արտադրանքն ավելանալու է մոտ 2,2 անգամ, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ մոտ 2,3 անգամ, գլանվածքինը՝ 2,1 անգամ, սև պղնձինը՝ 1,9 անգամ, կապարինը՝ 1,4 անգամ, ցեմենտինը՝ 8,8 անգամ, ածխի հանույթը՝ 1,6 անգամ և այլն։

✪ 1960 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, հացահատիկի արտադրությունն ավելանալու է մոտ 5 անգամ, բամբակի հումքինը՝ 2,3 անգամ, մսինը՝ 1,5 անգամ, կաթինը՝ 2,2 անգամ և այլն։

✪ Ղազախստանում նոր հնգամյակի ընթացքում կկառուցվի ոռոգման ցանց 214 հազար հեկտար տարածության վրա։ Արոտավայրերից ոռոգելի կդառնա 43 միլիոն հեկտար տարածություն։

✪ Վեցերորդ հնգամյակում եղբայրական ռեսպուբլիկաների հետ միասին, մեծ հաջողությունների կհասնի նաև մեր ռեսպուբլիկան։ Նոր հնգամյակի տարիներին ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքն ավելանալու է մոտ 1,7 անգամ, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 1,3 անգամ, հանքային պարարտանյութերինը՝ 1,6 անգամ, ցեմենտինը՝ 2 անգամ և այլն։



✪ Ավարտվելու է Սևան—Հրազդան կասկադի հիդրոէլեկտրակայանների շինարարությունը և սկսվելու է 100 հազար կիլովատ կարողությամբ Տաթևի հիդրոէլեկտրակայանի կառուցումը։

✪ 1960 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, հացահատիկի արտադրությունն ավելանալու է մոտ 1,5 անգամ, մսինը՝ 2,1 անգամ, կաթինը՝ 2,2 անգամ, բրդինը՝ 1,8 անգամ, բոժոժինը՝ 1,8 անգամ։ Ջրովի են դարձվելու 150 հազար հեկտար արոտավայրեր, կառուցվելու է ոռոգման ցանց 39 հազար հեկտար տարածության վրա, ավարտվելու է Թալինի ոռոգման ջրանցքի և Արզնի—Շամիրամ ոռոգման սիստեմի առաջին հերթի շինարարությունը։

# ԱՄՐԱՊՆԴՎՈՒՄ Է ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԵՐԿՐՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

## Ի. ԼԱՊՈՆՈԳՈՎ

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարը մատնանշեց, որ մեր դարաշրջանի գլխավոր գիծն այն է, որ սոցիալիզմը դուրս է եկել մեկ երկրի շրջանակներից և վերածվել է համաշխարհային սիստեմի։*

*Սոցիալիստական սիստեմն արդեն ապացուցել է իր կենսական մեծ ուժը, իր գերազանցությունը կապիտալիստական սիստեմի հանդեպ։ Սովետական Միությունը վերջին 26 տարում արդյունաբերական արտադրությունն ավելացրեց ավելի քան 20 անգամ, մինչդեռ ԱՄՆ-ը կարողացավ այն ավելացնել հազիվ երկու անգամից մի փոքր ավելի, իսկ կապիտալիստական աշխարհի արդյունաբերությունն ամբողջությամբ վերցրած՝ նույնիսկ այդքան աճ էլ չունեցավ։*



*Արդյունաբերական արտադրության տեմպերով կապիտալիստական պետություններից զգալիորեն առաջ են անցել նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրները։ Արդյունաբերական արտադրության նախապատերազմյան մակարդակը ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական երկրներում արդեն գերազանցված է երկու և կեսից մինչև հինգ և կես անգամ։ Ժողովրդական Չինաստանը, որ մյուսներից ուշ սկսեց սոցիալիզմի կառուցումը, վեց տարում արդյունաբերական արտադրանքի թողարկումն ավելացրեց ավելի քան չորս անգամ։*

*Սոցիալիստական շինարարության ասպարեզում ոչ քիչ հաջողություններ են ձեռք բերել նաև Հարավսլավիայի աշխատավորները, որտեղ արդյունաբերական արտադրության նախապատերազմյան մակարդակը գերազանցված է 2,8 անգամ։*

*Համաշխարհային սոցիալիստական սիստեմի ներսում պետությունների փոխհարաբերությունների համար բնորոշ գլխավոր գիծը՝ այդ պետությունների եղբայրական բարեկամությունն է ու սերտ համագործակցությունը։*

## Խաղաղություն և բարեկամություն՝ գժտության ու թշնամանքի փոխարեն

Դարավոր գժտությունները անցյալում բաժանել են լեհերին և գերմանացիներին, չեխերին և գերմանացիներին։ Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, Չեխոսլովակյան Ռեսպուբլիկայի և Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի կազմվելը, որտեղ իշխանության գլուխ են կանգնած աշխատավորները, վերջ դրեց վաղեմի թշնամությանը և ապահովեց այդ երկրների ժողովուրդների խաղաղ համագործակցությունը։ Արևմուտքի ագրեսիվ շրջանները հույս ունեին Օդերից մինչև Նեյսե ձգվող գերմանա-լեհական սահմանը դարձնել կռվախնձոր, հակասությունների անմար օջախ, բայց այն, ընդհակառակը, դարձավ լեհական և գերմանական ժողովուրդների խաղաղության և բարեկամության սահմանը։ Լեհաստանը և Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան համատեղ օգտագործում են սահմանամերձ շրջաններում եղած արդյունաբերական օբյեկտները, համագործակցում են կոմունիկացիաների և կապի ասպարեզում. նրանց միջև եղած ապրանքաշրջանառությունը զգալիորեն գերազանցում է Լեհաստանի և ամբողջ Գեր-



մանիայի միջև պատերազմից առաջ եղած առևտրի ծավալը։

Եղբայրական բարի-դրացիական հարաբերություններ են հաստատվել Ռումինիայի և Հունգարիայի միջև, Չեխոսլովակիայի և Հունգարիայի միջև, որոնք անցյալում մշտական թշնամական հարաբերությունների մեջ են եղել։ Դանուբի և Վիսլայի, Օդերի և Վըլտավայի ափերին ամրապնդվում է այժմ ազատ ժողովուրդների բարեկամությունը, որոնք կառուցում են նոր կյանք, երջանիկ ու լուսավոր կյանք՝ առանց շահագործողների և օտարերկրյա կեղեքիչների։

Դանուբից և Վիսլայից մտքով սլանանք դեպի Յանցզիի և Խուանխեի ափերը։ Չին մեծ ժողովուրդը Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական երկրների եղբայրն է, նրանց եղբայրն են նաև Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայի, Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի ժողովուրդները։ ՍՍՌՄ-ը և ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական երկրները այդ ժողովուրդների հետ կապված են ջերմ բարեկամության հազարավոր թելերով։

Սոցիալիստական լագերի ներսում ստեղծ-

ված միջազգային նոր հարաբերությունների վառ դրսևորումն է հանդիսանում բարեկամության, համագործակցության և փոխադարձ օգնության պայմանագրերի կնքումը սոցիալիզմի երկրների միջև։ Այդ իրավահավասար պայմանագրերը այն հաստատուն հիմքն են, որի վրա հաջողությամբ զարգանում է սոցիալիստական երկրների եղբայրական համագործակցությունը։

Ժողովուրդների միջև հարաբերությունների այդ բոլորովին նոր, առաջներում պատմության մեջ չտեսնված տիպը բխում է սոցիալիստական պետությունների բուն էությունից, որոնց համար խորթ է մյուս երկրներին ստրկացնելու, կողոպտելու և կեղեքելու ձգտումը։ Ընդհակառակը, սոցիալիզմի լագերի բոլոր երկրները ձգտում են ամեն կերպ օգնել միմյանց տնտեսության և կուլտուրայի զարգացման գործում։

## Հավասարության և փոխադարձ շահավետության հիման վրա

Թե քաղաքական և թե տնտեսական տեսակետից միանգամայն ինքնուրույն և անկախ սոցիալիստական պետությունները միմյանց միջև հաստատել են իրավահավասար,



փոխադարձորեն շահավետ առևտրական կապեր, ամեն կերպ ընդլայնում են գիտա-տեխնիկական փորձի փոխանակությունը, բազմակողմանի փոխադարձ օգնությունը և ժողովրդատնտեսական պլանների գործարար կոորդինացումը։

Գրեթե չկա մի նյութ, մի հանածո, մի հումք, որ չունենան երկրագնդի հսկայական տարածություններ բռնող սոցիալիզմի երկրները։ Այդ երկրների տնտեսական սերտ համագործակցությունը ապահովում է արտադրական և հումքային ռեզերվների լավագույն օգտագործումը նրանց կողմից։ Ընդորում, նրանցից յուրաքանչյուրի ազգային շահերը հաջողությամբ զուգորդվում են ամբողջ սոցիալիստական լագերի շահերի հետ։

Եթե Սովետական Միությունը, որը երկար ժամանակ կապիտալիստական շրջապատման մեջ գտնվող սոցիալիզմի միակ երկիրն էր, վիճակված էր զարգացնել ծանր ինդուստրիայի բոլոր ճյուղերը, ապա այժմ ժողովրդական դեմոկրատիայի երկրների համար ստեղծվել են ավելի նպաստավոր պայմաններ։

Իրագործելով ինդուստրացումը՝ նրանցից յուրաքանչյուրը կարող է այժմ մասնագիտանալ արդյունաբերության այն ճյուղերի զար-

գացման մեջ, արտադրանքի այն տեսակների արտադրության մեջ, որոնց համար նա ունի ավելի նպաստավոր բնական և տնտեսական պայմաններ։ Սոցիալիստական ճագերի երկրներից յուրաքանչյուրը իրեն անհրաժեշտ մյուս ապրանքները և հումքը ստանում է համաշխարհային դեմոկրատական շուկայում, որը առաջացել է երկրորդ համաշխարհային պատերազմից հետո և ընդգրկում է սոցիալիստական երկրները։

Սովետական Միությունը հզոր ինդուստրիալ տերություն է, որը համաշխարհային այդ նոր շուկային մատակարարում է ժողովրդական դեմոկրատիայի երկրների ինդուստրացման համար անհրաժեշտ ժամանակակից բարձր արտադրողական մեքենաներ և սարքավորում, ինչպես նաև կարեվորագույն արդյունաբերական հումք և հաց։

Ժողովրդական Չինաստանը՝ իր հումքային անսահմանափակ ռեսուրսներով սոցիալիստական շուկային մատակարարում է գունավոր մետաղներ և գյուղատնտեսական մթերքներ, իսկ վերջին ժամանակներս նաև իր երիտասարդ վերամշակող արդյունաբերության արտադրանքի որոշ տեսակներ։

Լեհաստանն այդ շուկան զգալի չափով ապահովում է քարածխով, կոքսով, ցինկով,



ծովային նավերով, որոշ մեքենաներով, գործվածքեղենով։ Չեխոսլովակիան իր զարգացած ծանր արդյունաբերությամբ հանդերձ՝ օգնում է ժողովրդական դեմոկրատիայի երկրների ինդուստրացմանը արդյունաբերական, էներգետիկ և վերամբարձիչ-տրանսպորտային սարքավորման մատակարարմամբ։ Հունգարիան արտահանում է մետաղահատ բարդ հաստոցներ, որոնց արտադրությունը նա կազմակերպեց ժողովրդական իշխանության տարիներին, տուրբիններ, շոգեքարշեր և վագոններ, բոքսիտներ, ալյումին, պարենային ապրանքներ։ Բուլղարիան համաշխարհային դեմոկրատական շուկային մատակարարում է գունավոր մետաղների հանքանյութ, ծխախոտ, բանջարեղենի և մրգի պահածոներ, ցեմենտ։ Ռումինիան՝ նավթամթերքներ, հորատման սարքավորում, ձկնորսական նավեր, անտառանյութ, ցեմենտ, հաց։ Ալբանիան՝ նավթ, քրոմ, բիտում, գյուղատնտեսական արտադրանք։ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան՝ էլեկտրատեխնիկական սարքավորում, օպտիկա, ճշգրիտ մեխանիկայի առարկաներ, հանքային պարարտանյութեր Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկան՝ բուրդ, միս և անասնաբուծական այլ մթերքներ։

## Եղբայրական փոխադարձ օգնություն

Կարևոր նշանակություն ունեն սոցիալիստական լագերի երկրների կողմից կնքվող համաձայնագրերը արդյունաբերության առանձին ճյուղերի զարգացման գործում փոխադարձ օգնության մասին, արդյունաբերական ձեռնարկությունների համատեղ կառուցման և շահագործման մասին։ Օրինակ՝ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան Չեխոսլովակիայի հետ համաձայնագիր ունի ծանր և թեթև արդյունաբերության ասպարեզում, Հունգարիայի հետ՝ թեթև արդյունաբերության ասպարեզում։

1952 թվականի ամռանը ստեղծվեց ռումինա-հունգարական քիմիական «Ռոմագկիմ» խառը ընկերությունը։ Ռումինական բնական գազի հսկայական պաշարների համատեղ օգտագործման բազայի վրա երկու երկրներում էլ ստեղծվում են քիմիական արդյունաբերության նոր ճյուղեր։ Այդ նպատակով Ռումինիայից դեպի Հունգարիա, մի քանի հարյուր կիլոմետր երկարությամբ անցկացվելու է գազամուղ, Ռումինիայում կառուցվելու է գազաքիմիական խոշոր կոմբինատ, Հունգարիայում՝ քիմիական գործարան։

Հունգարիան և Չեխոսլովակիան բեղմնավոր կերպով համագործակցում են ալյումի-



նի արդյունաբերության զարգացման ասպարեզում՝ հունգարական բոքսիտների, Եվրոպայում ալյումինի արդյունաբերության հումքի այդ խոշորագույն հանքերի, համատեղ օգտագործման հիման վրա։

Հիանալի արդյունքներ է տալիս մի շարք երկրների համագործակցությունը արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման համար էլեկտրաէներգիայի ռեսուրսների օգտագործման ասպարեզում։ Այդպիսի նպատակ է հետապնդում, մասնավորապես, էլեկտրացանցերի միացման և էլեկտրաէներգիայի փոխադարձ հանձնման վերաբերյալ երկկողմանի համաձայնագրերի կնքումը Հունգարիայի և Չեխոսլովակիայի, Բուլղարիայի և Ռումինիայի, Հունգարիայի և Ռումինիայի, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի և Չեխոսլովակիայի միջև։

Սոցիալիզմի երկրների եղբայրական համագործակցությունը Ռումինիային հնարավորություն տվեց ձեռնամուխ լինելու եղեգնի հումքի իր հսկայական պաշարների օգտագործմանը։ Մոտակա տարիներին Ռումինիայում կառուցվելու են ցելյուլոզայի գործարաններ, ընդորում դրանց նախագծերը, սարքավորումները և նյութերը մատակարարելու են Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբ-

լիկան, Չեխոսլովակիան և Լեհաստանը, իսկ դրանց հետ կապված ծախսերը վճարվելու են ցելյուլոզայով՝ այդ գործարանների գործարկումից հետո։

Սոցիալիզմի երկրների տնտեսական համագործակցության մեջ, որը նպաստում է համաշխարհային սոցիալիստական սիստեմի հզորության աճմանն ու ամրապնդմանը, առաջատար դերը պատկանում է Սովետական Միությանը։ Ներկայումս Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը, կնքված պայմանագրերին համապատասխան, օգնում է ժողովրդական դեմոկրատիայի երկրներին 391 ձեռնարկությունների և ավելի քան 90 առանձին ցեխերի ու սարքերի կառուցման գործում։ Սովետական Միությունը այդ երկրներին առավելագույն նպաստավոր պայմաններով տրամադրել է ընդհանուր գումարով 21 միլիարդ ռուբլու երկարատև վարկ, նրանց ցույց է տալիս գիտա-տեխնիկական բազմակողմանի օգնություն։

Չինաստանի ինդուստրացման ասպարեզում կարևոր գործոն է հանդիսանում սովետա-չինական տնտեսական համագործակցությունը։ Ներկայումս ՍՍՌՄ-ը Չինաստանի եղբայրական ժողովրդին օգնում է 156



ձեռնարկությունների և 21 առանձին ցեխերի կառուցման գործում։ Սովետական մասնագետները մասնակցում են Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի համար կառուցվելիք նոր գործարանների նախագծմանն ու կառուցմանը։ Նրանք տեղում օգնում են չին բարեկամներին յուրացնելու Սովետական Միությունից ստացվող բարդ մեքենաներն ու սարքավորումները։ Սովետական գործարաններում պրակտիկա են ձեռք բերում հարյուրավոր չին ինժեներներ, տեխնիկներ, վարպետներ։

Այս տարվա ապրիլի 7-ին Պեկինում սովետա-չինական համաձայնագիր ստորագրվեց Սովետական Միության կողմից Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի արդյունաբերական 55 նոր ձեռնարկությունների կառուցման գործում օգնություն ցույց տալու մասին, բացի այն օբյեկտներից, որոնք կառուցվում են առաջներում կնքված սովետա-չինական համաձայնագրերին համապատասխան։ Միաժամանակ ՍՍՌՄ և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի կառավարությունները համաձայնագիր ստորագրեցին Լանչժոուից մինչև Թուրքեստանա-Սիբիրյան երկաթուղու Ակտոգայ կայարանը երկաթուղի կառուցելու և 1960 թվականից նրանով ուղ-

ղակի երթևեկություն կազմակերպելու մասին։

Այդ համաձայնագրերը մի նոր քայլ են սովետա-չինական տնտեսական համագործակցության հետագա զարգացման գործում, Սովետական Միության և Չինաստանի ժողովուրդների անխախտ բարեկամության ամրապնդման գործում։

Տեխնիկական պրոգրեսի համար լայն հեռանկարներ է բացում ատոմային էներգիայի արտադրություն կազմակերպելու և այն խաղաղ նպատակներով օգտագործելու ասպարեզում Սովետական Միության կողմից բարեկամ պետություններին ցույց տրվող օգնությունը։ Մի շարք պետությունների հետ կնքված համաձայնագրերով՝ Սովետական Միությունը օգնում է նրանց ստեղծելու ժամանակակից գիտա-էքսպերիմենտալ բազաներ, պատրաստելու գիտական աշխատողների և ինժեներների համապատասխան կադրեր։

Ատոմային էներգիայի արտադրության և այն խաղաղ նպատակներով օգտագործելու ուղղությամբ սոցիալիստական երկրների համագործակցության հետագա զարգացման գործում մեծ դեր է կոչված կատարելու վերջերս ստեղծված միջուկային հետազոտու-



թյունների Միացյալ ինստիտուտը, որին Սովետական Միությունը հանձնել է առաջնակարգ գիտա-հետազոտական սարքավորում։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրներն էլ իրենց հերթին փոխադարձ հիմունքներով Սովետական Միությանը մատակարարում են իրենց կողմից սովորաբար արտահանվող զանազան ապրանքներ և արդյունաբերական հումք, ինչպես նաև Սովետական Միությանը հանձնում են զգալի քանակությամբ տեխնիկական դոկումենտացիա, տեխնոլոգիական պրոցեսների նկարագրություններ։ Օրինակ՝ Չինաստանը մատակարարում է սովետական ժողովրդական տնտեսության համար անհրաժեշտ վոլֆրամ, անագ, մոլիբդեն, ջութ, բուրդ և այլ ապրանքներ։ Լեհաստանը Սովետական Միությանը մատակարարում է տրանսպորտային և ձկնորսական նավեր, երկաթուղային շարժական կազմ, շաքար, բրդյա և վուշյա գործվածքներ։ Ռումինիան Սովետական Միություն է ուղարկում ձկնորսական նավեր և բարժաներ, նավթամթերքներ, կահույք և այլն։

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի հետագա ամրապնդման, սոցիալիզմի երկրների տնտեսական համագործակցության հետագա ընդլայնման հոյակապ հեռանկար-

ներ են բացում ՍՄԿԿ XX համագումարի ընդունած Դիրեկտիվները վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ։

Համագումարի ընդունած Դիրեկտիվներին համապատասխան, Սովետական Միությունն ամեն կերպ ընդարձակելու է համագործակցությունը ժողովրդական դեմոկրատիայի երկրների հետ՝ տնտեսական ռեսուրսները և արտադրական կարողությունները ինչպես յուրաքանչյուր երկրի, այնպես էլ ամբողջ սոցիալիստական լագերի օգտին առավել ռացիոնալ ձևով օգտագործելու ասպարեզում։ Այդ նպատակին հասնելու համար հարկավոր է կոորդինացնել սոցիալիստական երկրների ժողովրդատնտեսական պլանները, մասնագիտացնել ու կոոպերացնել արտադրությունը, ինչպես նաև կատարել գիտատեխնիկական նվաճումների և առաջավոր արտադրական փորձի փոխանակություն։

ՍՄԿԿ XX համագումարի որոշումները, որոնց մեջ նշված է այդ ուղին, նոր հեռանկարներ են բացում Սովետական Միության և սոցիալիստական լագերի մյուս երկրների տնտեսական հաջող համագործակցության զարգացման գործում։

---

# ԱԳՐԱՐԱՅԻՆ ՎԵՐԱՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՎԻԵՏՆԱՄԻ ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅՈՒՄ

Ռ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Վյետնամի ժողովուրդը, Հո Շի Մինի գլխավորած Աշխատավորների պարտիայի ղեկավարությամբ, տապալեց օտարերկրյա իմպերիալիստների տիրապետությունը և 1945 թվականի սեպտեմբերի 2-ին ստեղծեց անկախ դեմոկրատական ռեսպուբլիկա։

Զնայած երկրում բազմազան արդյունաբերական հումքի առկայությանը, Վյետնամը երկար տարիներ ֆրանսիական իմպերիալիստների ճնշման տակ գտնվելու պատճառով չէր կարողանում զարգացնել իր արդյունաբերությունը։ Նրա էկոնոմիկայում գլխավոր տեղը պատկանում է գյուղատնտեսությանը, հատկապես՝ բրնձի ցանքերին և կաուչուկատու ծառերի պլանտացիաներին։ Վյետնամում մեծ չափով մշակվում են նաև եգիպտացորեն, շաքարի եղեգն, թեյ, սուրճ և այլ կուլտուրաներ։

Երկրի յուրաքանչյուր տասը բնակչից ինը գյուղացիներ են։ Գաղութարարների օրոք այդ

ինը մարդուց հինգը-վեցը չունեին ոչ մի պատառ հող։ Մշակվող հողերի 60 տոկոսը գտնվում էր ֆրանսիական գաղութարարների և վյետնամական կալվածատերերի ձեռքում, որոնք կազմում էին երկրի բնակչության միայն 5 տոկոսը։ Չքավորները հողը վարձակալում էին նրանցից, դրա համար նրանց տալով բերքի կեսը կամ նույնիսկ երեք քառորդը, իրենք մնալով կիսաքաղց, վաշխառուների տարկական պարտքերի մեջ թաղված։

Վյետնամի դեմոկրատական ռեսպուբլիկայի կառավարության կողմից անցկացված հողային ռեֆորմի ժամանակ արգելվեց վաշխառությունը, կազմակերպվեց գյուղացիների վարկավորումը։ Մշակվող բոլոր հողերի 12 տոկոսը, այսպես կոչված համայնքային հողերը, որ առաջ փաստորեն վայելում էին գյուղի շահագործող խավերը, արդարացիորեն բաժանվեցին աշխատավոր գյուղացիներին։ Կառավարությունը հրատարակեց մի օրենք, որով գյուղացիների մի մասին լրիվին ազատեց պարտքերից և զգալիորեն կրճատեց մյուս մասի պարտքերը։

Խոպան և ճահճային հողերի յուրացմամբ զբաղվող գյուղացիական տնտեսությունները տևականորեն ազատվեցին հարկերից։

Վերացվեց հարկերի բազմազանությունը և



մտցվեց միասնական գյուղատնտեսական հարկ՝ բնամթերքով, որի չափը որոշվում է ոչ միայն բերքի քանակով և շնչերի թվով, այլև սոցիալական դրությամբ։

1953 թվականի մայիսին հրամանագիր հրատարակվեց գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու և գյուղացիների նյութական դրությունը բարելավելու մասին։ Ֆրանսիական գաղութարարների և վյետնամական դավաճան կալվածատերերի հողերը, անասունները, գույքը բռնագրավվեցին և անվճար բաժանվեցին հողազուրկ ու սակավահող գյուղացիներին՝ նրանց շնչերի համեմատ։

Հողերը, ըստ շնչերի թվի, առաջին հերթին հանձնվեցին ռազմաճակատում զոհվածների ընտանիքներին, պատերազմի հաշմանդամներին և բանակում գտնվող ռազմիկների ընտանիքներին։ Աշխատավոր գյուղացիներին ցույց տրվեց ամեն տեսակ օգնություն. նրանց տրամադրվեց վարկ, բանող անասուններ, պարարտանյութ, միջոցներ ձեռք առնվեցին հողի մշակությունը բարելավելու ուղղությամբ։ Գյուղացիներին իրավունք տրվեց իրենց հողաբաժինները վաճառելու, գրավ դնելու, ուրիշին հանձնելու և իբրև ժառան-

տություն թողնել նրան, որին ինքը ցանկանում է:

Վյետնամի գյուղերում ստեղծվել են սպառողական և արտադրական կոոպերատիվներ, իսկ այնտեղ, ուր հարկավոր է համատեղ աշխատանք կատարել, ասենք՝ գետերի ափերին պատնեշ կանգնեցնել և այլն, գյուղացիները միավորվում, փոխօգնության խմբեր են կազմում: Իր զարգացումը սկսելով ցածր ձևերից՝ փոխօգնության խմբերից, կոոպերատիվ շարժումը ավելի բարձր արտադրական ձևեր է ընդունում: Առաջին կոոպերատիվ տնտեսությունները կազմակերպվել են Տոունգո գավառի հարավային մասում:

1954 թվականի երկրորդ կեսին հողային ռեֆորմը լայնորեն անցկացվեց մի շարք գավառներում: 1955 թվականի առաջին կեսին հողային ռեֆորմը ավարտվեց 735 գյուղերում, 7 գավառներում, որոնք ունեն 1.586 հազար բնակիչ: Կալվածատերերից խլվեց և 217 հազար գյուղացիական ընտանիքների միջև բաշխվեց 225 հազար մաու հող (մաուն հավասար է 0,36 հեկտարի), 8 հազար գոմեշ և եզ, 149 հազար գյուղատնտեսական գործիք, 13 հազար տուն ու շենք, 4 հազար տոննա պարենամթերք և այլ գույք: Իսկ 1955 թվականի կեսերին հողային ռեֆորմ էր



անցկացվել արդեն 1.980 հազար բնակիչ ունեցող գավառներում: Կալվածատերերից խլվել և գնվել է մոտ 300 հազար մաու հող:

Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի կառավարության մշտական հոգատարության շնորհիվ զգալիորեն ընդարձակվել է մշակվող հողերի տարածությունը՝ իրիգացիոն սիստեմների վերականգնման ու բարելավման, ճահիճների չորացման և ջունգլիների մաքրման միջոցով: Իրենց իսկ գյուղացիների ուժերով վերականգնվել են 8 հազար խոշոր իրիգացիոն սիստեմներ, որոնք կարող են ոռոգել 20 հազար մաու հող: Միայն Տայ Նհուեն գավառի գյուղերում, որտեղ ռեֆորմ է անցկացված, գյուղացիները անցյալ տարվանից ստեղծել են ավելի քան 4 հազար փոխօգնության խմբեր, վերականգնել 416 ոռոգման ջրանցք և դրա շնորհիվ 7 հազար մաուով ավելացրել բրնձի ցանքատարածությունը:

Իրիգացիոն սիստեմների ընդարձակման և ագրոտեխնիկական միջոցառումների կիրառման շնորհիվ մշակության համար պիտանի հողերի պետական ֆոնդերի աճման կապակցությամբ՝ կառավարությունը դեռ 1947 թվականի մարտի 6-ին հրատարակեց մի օրենք, որի համաձայն Վյետնամի 18 տա-





ընկանից բարձր յուրաքանչյուր քաղաքացի կարող է պետական ֆոնդից ստանալ 8 մաու հող պայմանով, որ պարտադիր կերպով մշակի այն։ Երկու տարուց հետո հողամասը դառնում է մշակողի սեփականությունը։

Զգալիորեն փոխվել է Վյե Բակ, Տայ Նգուեն, Բակ Ժանգ և մյուս գավառների գյուղացիների կյանքը և շատ գյուղերի կուլտուրական դեմքը։ Գյուղացիները կառուցում են նոր տներ, ձեռք են բերում բանող անասուններ, անհրաժեշտ տնային գույք։ Հողի նոր տերերը տարվա ընթացքում արդեն բրնձի երկու բերք են ստանում (մեկ մաուի բերքատվությունը կազմում է 1.500 կիլոգրամ)։

1956 թվականին հողային ռեֆորմը կավարտվի ամենուրեք։ Ռեֆորմի անցկացմանը ամենայն ակտիվությամբ մասնակցում են գյուղական բնակչության բոլոր խավերը՝ չքավորները, բատրակները, միասնական գյուղացիական կազմակերպությունները և այլն։

Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի աշխատավոր գյուղացիությունը, ամբողջ ժողովրդի հետ միասին, Աշխատավորների պարտիայի ղեկավարությամբ վստահորեն կառուցում է իր լուսավոր ապագան։

---

## СОДЕРЖАНИЕ




Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Բ. Ղազարեկյան— *«1905 թ. հոկտեմբերի Համառուսաստանյան քաղաքական գործադուլը և նրա արձագանքները Հայաստանում»: Գինը 1 ռ. 08 կ., 168 էջ, տիրաժ 3.000:*

Հայկ Գյուլի-Քեխյան— *«Քննադատական հոդվածներ»: Գինը 9 ռ. 10 կ., 416 էջ, տիրաժ 5.000:*

Գ. Հովհաննիսյան— *«Պայքար սոցիալիստական գյուղատնտեսության վերելքի համար»: Գինը 1 ռ. 30 կ., 124 էջ, տիրաժ 3.000:*

Վ. Գևորգյան— *«Լերմոնտով»: Ողբերգություն 5 գործողությամբ: Գինը 5 ռ. 25 կ., 184 էջ, տիրաժ 5.000:*

Արաքս— *«Բիբի»: Մանկական պատմվածքներ: Գինը 1 ռ. 20 կ., 76 էջ, տիրաժ 5.000:*

---

**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 9 1956 г.**

*ՎՖ 03080 Պատվեր 415 Տիրաժ 8950*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8:*

*Գինը 50 կոպ.:*